# Ի ԹԱԲՈՐ ԼԵՐԻՆ

## ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ՏԵԱՌՆ ԱՌ ՊԵՏՐՈՍԵԱՆՍ

Մինչդեռ երթային նոքա ՚ի ճանապարհի, ասէ Տէր մեր ցերկոտասանսն. « Ո՞ ուստեք ասեն զինէն մարդիկս թէ իցեմ »։ Պատմեցին նմա զարտաքնոցն, զի այլ ընդ այլոց կարծէին։ Ապա ցնոսա. « Դուք զի՞նչ ասէք զինէն »։ Յառաջեցաւ Պետրոս և ասէ. « Դու ես Քրիստոս Որդի Աստուծոյ »։ Գովեաց Տէր մեր զգեղեցիկ վկայութիւն նորա, և Հօր իւրում ետ զյայտնութիւն շնորհին. և զի դեռ եւս Պետրոս այսր և անդր դեգերէր, կարծէր եթէ Քրիստոս ոչ մեռանիցի, ոչ քաջ գիտացեալ՝ եթէ մահուամբն նորա մահ մեռանի և աշխարհ կենդանանայ. ասէ Տէր մեր եթէ մնացայց. Արկանէ զերանութիւնն երկնաւորս, տայ մանկունս բանից ՚ի լսելիս նորա. բոլոր լինէր շարժեցեալ յանհաղլին երկիւղէն իբրեւ լուաւ ՚ի Տեառնէ, եթէ « Պարտ է Որդւոյ մարդոյ բազում չարչարանս ընդունել, մեռանել և յերիր աւուր յառնել »։ յոյժ տրտմեցոյց անուանք մահուն, և տուաւել քան զյոյժ միթթարեաց աւետեօք յարութեան։ Եւ նորա ՚ի մեծ տագնապէ մահուն յիշատակօք մնացաւ զաւետիս յառնելոյն. որպէս և է տեսանել ՚ի բնութեանս մերում. հին ախտքն բնութեանն մեղացն՝ ոչ տայ թոյլ վաղվաղակի եկամուտ նորոյ կենացն ՚ի ներքս անկանել. որպէս և որդիք ժողովրդեանն հին կուրութեամբն խաւտայլն ընդ նորոյ կենացս երեւումն, անուանելով զՆա Եղիա կամ Երեմիա կամ զայլ ոք յառաջին մարգարէիցն, չար ՚ի միխթարութիւն անձանց իւրեանց մահկանացուացս։ Մահկանացու կարծէք՝ զմիտս ժողովրդեանն յերկուացուցանելով յայնմանէ, որ եկն կատարել զբանս մարգարէիցն։ Եղելին ախտիւ խօթանայր և

հի. զոր և այժմ իսկ յայլոց գրոյն լուիցես. զի ասէ աւետարանագիրն եթէ Մովսէս և Եղիա զելն նորա պատմէին զոր կատարելոցն էր յԵրուսաղէմ։ Արդ իբրեւ ետես Պետրոս, եթէ մեռեալք և կենդանիք զնոյն բանս քարոզեն, և ինքն կամօք Տէր յայն եկեալ է՝ որ միաբանութեամբ, եւս քաջ վստահացեալ յառաջինն երկիւղն. քանզի հաստատեալ գիտաց եթէ ՚ի մահուանէ Տէր մեր ոչ է զանգիտելոց, և մեզ թողուլ և փախչել զնա անհնար է. նա և զայն եւս քաջայայտ առնէր զմիտս՝ եթէ յորժամ իջանէ նա ՚ի լեռնէ աստի, այսուհետ յԵրուսաղէմ երթայ, ուր մեզ կանխած իսկ է մահու. վասն այսր խղճի մնաց իւրոց ասէ ասել ցՏէր, զի հրամայեսցէ առնել տաղաւարս իւրաքանչիւր նոցա, և զՄովսէս և զԵղիա մի արձակեսցէ անդրէն. զայսս թէ առիցէ որ ՚ի կարծիս մնաց իւրոց, թէ չիք յայնմ լերին իշխանութիւն մահու, և եթէ ՚ի լեռանս յայս մահ երկնչի եղանել. Հրեայքն իսկ ոչ կարեն յանդգնել ՚ի սա. ապա եթէ և մեք իսկ երթիցուք յԵրուսաղէմ, յորժամ և Մովսէս և Եղիա ընդ մեզ իցեն, ոչ կարեն քահանայքն խուել զմեզ. քանզի յայժ տեղեկացեալ են տասնից ահից նոցա։ Այն Մովսէս է այն որ յանապատին բիւրս բազմաց կոտորեաց ՚ի նոցանէ, և բանիւ հրամանաւ սորա բացաւ երկիր և եկուլ զդատակս նոցա։ Չեն անտեղեակ և վասն Եղիայի, թէ սակաւիկ ինչ խօժոռին ընդդէմ սորա, կապէ զերկինս և արգելու զանձրեւ ՚ի նոցանէ. և եթէ եւս յանդգնեսցին՝ իջուցանէ հուր յերկնից և այրէ զթշնամիսն ճըշմարտութեանն. ՚ի բազում տեղիս գիտէին զզօրութիւն ահի սորա, ոչ միայն անուանեալ քահանայքն, այլ և արտաքին ուրացողքն նոցա. չէ մոռացեալ նոցա զատակումն զութհարիւր քրմաց նոցա զոր ինքն իւրովք ձեռօքն կոտորեաց ՚ի հեղեղատն Կիսոնի. և եթէ Աքաաբ թագաւոր երկնչէր ՚ի սմանէ, որչափ եւս Աննա և Կայիափա՝ որ տկարագոյնք են քան զԱքաաբ։

Վասն այսր ամենայն կարծեաց նոցա որ մարդկաբար երկնչէին, յայժ աղաղակեալ նոցա Հօր ՚ի վերուստ ասէ. “Դա է որդի իմ սիրելի, դմա լուարուք”։ Ծառայք երկրպագուք պաշտօնայք լինէին տեառն իւրեանց. զի երկրեան ամենեքեանք են ընդ հովանաւ երկնից. երկնից

տէրութիւնն ոչ ինքն յումեքէ պահեալ լինի, այլ նա պահէ զամենեսեան խնամով զօրութեամբն։ Նա տալո-ւոց հարկանել զուր մի աշխատակք. եթէ կարի քիւրա-րութք, ահա տուեալ է ձեզ անձն հօղանի, ընդ ամենայն հօղանեաւ զօրացուցուք։ Նոյն բարբառ իբրեւ եկն նո-ցա յերկնից, հայեցան տեսին զՅիսուս միայն. և տարա-կուսեցին խնդալ, եթէ յաւէտ անարի թմբրեալ էին նո-քա, և ոչ գիտէին զինչ խօսէին։ Նա եթէ թմբրեալք կոչէ զնոսա զերն, զխարդ ծանեան զՄովսէս և զԵղիա. յայտ է թէ յիմարելոց էին թմբրեալք, այլ ոչ ՚ի լու-սոյ և յիմանալոյ. զոր աչօքն տեսին՝ Քրիստոսի էր, և զոր ականջօքն լուան՝ չէր նոյն. այլ քանզի կարի ահաւորին էր ժամն, ոչ կարաց մարդկային բնութիւնն հասու լինել երկնաւոր բնութեանն. վասն զի այսր և անդր այլաթա-քէին և մեղադրել որ ոչ կարէր։ Զի եթէ մեծն Աբրա-համ զվերին զօրութիւնն բազմապատիկն մարդացեալս ետես բախեալ ՚ի յոգիսն՝ ոչ կարէր կալ ՚ի վերայ Քրիստոսի, այսր և անդր տարաբերէր զմիտսն. տեսանէր երիս և մի կարծէր, կարծէր մի և խօսէր ընդ երիս. երեւէին մարդ, նա խնամոյր Աստուած. և ո՞ իսկ ՚ի հաղեղէն բնու-թեանս կարացէ Քրիստոսի կալ և իմանալ զայն զանբա-բաւ մեծութիւն. ոչ միայն մարդիկ մարմնաւորք, այլ և ոչ պարզ բնութիւնքն երկնից. Վերուստ կոչէ զերն թմբրեալս զնոսա. յորմէ զօրութենէ լերինքն հալին և անդունդք ցամաքին; և ամենայն թանձրահող երկիր ՚ի հիմանէ դղրդեալ սասանի. աղօթութեամբ իւրով խնայէ ՚ի մեզ, զի զործք ձեռաց նորա եմք. որպէս հա-նապազ յամենեսեան և այն օր երկեան ՚ի լերինն.

Պիտեմք զի աստուածային գիրք այլ ընդ այլոյ չխօ-սին, այլ զամենայն պատմեն Քրիստոսի. բայց է բան, որպէս ասէ՝ նոյնպէս և իմանի. այլ պիտոյ է ծածկեալ մնաց բանին յայտնութիւն, որ հաւատովք ընդունին ՚ի փրկութիւն անձանց։ Ծանեան, ասեն, աշակերտ-եալքն զՄովսէս և զԵղիա. իբրեւ ասես, եթէ այս ծանեան, զխարդ ասեն ծանեան՝ զոր ոչն գիտէին. քաջ ՚ի միտ առ զզօրութիւն բանին, և մի մոռացկոտ լինիր իբրեւ զոտէր Պետրոս. ՚ի գլուխ Ճաւիդ ընթերցիր, ար-քայութիւն տեսաց տեղւոյն. չիք անդ մոռացումն մարդ-կային, այլ յիշողութիւն անմոռացական. քանզի մեզ

ւորութիւն մահու . տեսցես անդ 'ի լերինն զմահ մեռեալ և զկենանս թագաւորեալ :

Եթէ դուք կամիք՝ անդէն 'ի ճառս լերինն դարձջուք , քանզի և իջեալ իսկ չեմք 'ի լեռնէ անտի . և մինչ անդր եմք՝ զանտարին եւեթ խօսեսցուք . և զինչ անդ բանքն էին՝ համակ զնովիմբ եկեսցուք . և եթէ առ 'ի պէտս այլոց բանից իջցուք 'ի լեռնէ անտի , դարձեալ 'ի նոյն լեառն ելցուք . եթէ երկիցս և եթէ երիցս , սակայն զնոյն արասցուք . մինչև կատարեսցի ճառս , շուրջ զլերամբն փակեսցուք : Բայց առ այժմ 'ի վեր անդ զոյէր Պետրոս հարցանել պարտ է , եթէ առ ինչ սիրեցեր այդչափ զլեառնդ և այդր կամիս առնել քեզ բնակութիւն , քեզ և ընկերացդ . եթէ առնիցես՝ սակաւիկ մի պատեհագոյն է քեզ և Տեառն և Մովսէսի : Իսկ այդ իմն կարի պատեհագոյն թուի : Յարեաւ , ասէ , 'ի մեռելոց , վասն այսր կամիմ թէ աստ կայցեն : Յարուցեալ՝ որ տաղաւարի կարօտանայ , այնմ եւս յարութեան իսկ չէ արժան ասել , այլ երազ և առ աչօք երեւումն : Ուրեմն չեւ եւս անդէկացեալ վասն յարուցելոյն , սակաւ մի ճաշակ եցոյց քեզ յարութիւնն , ընդ տեսանելն և թմբրեցար . եթէ այնպէս փառօք էին նոքա քեզ՝ որ անփոփոխ ընդունելոյն էին , դու ապաքէն եւս առաւել վըտանգէիր : Բայց ոչ կարեմ մեղադիր լինել քեզ , զի դեռ եւս հրէախառն էս . ընթեռնուս զգրեալսդ օրինացն , այլ իմանալ չեւ եւս կարացեալ զարժանն :

Ի լերինն շքեղացան դէմքն Մովսէսի , և հարքն ձեր որ կարացին հայել յերեսս նորա մերկ , և դու զօգիոդ ընդ մարմնական վարագուրովդ ծածկեալ ունիս : Մովսէս ծածկելով զդէմսն՝ մերձեցոյց զնոսա առ ինքն , և Տէր զայն քող մերկանայ 'ի սրտից ձերոց . անդստին իսկ ունիք զմարդասիրութիւն առ ազգդ ձեր . աստուածանուն մեծարեաց զծառայս իւր և փառօք իւրովք զարդարեաց զնա , և ժողովուրդն առ ատելութեան իւրեանց փախչէին 'ի նմանէ . և նա նշանօք և արուեստիւք արծարծէր զնոսա , զի ընդելեալ մարդասիրութեանն նորա մերկ զիմօք կարասցեն տեսանել զաստուածութիւնն : Այն սա նա է , որ բազում իրօք կրթեաց ըզձեզ , զի այսօր արժանի լինիցիք տեսանել զճաճանչ լուսոյ աստուածութեանն . բայց այսօր դու լուսաւորդ ցու-

զակրդեանն տաղաւարս յանապատի անբաւ բազմութեանն. ամենն էր բաւական հովանի, և զբոլոր գիշերն լոյս հրոյ առաջնորդէր. և եթէ 'ի չարմն այնպէս զըթայր, որչափ եւս առաւել 'ի ձեզ տառապեալս: Զամենայն ինչ թողէք և զհետ դորա շրջիք. զինչ անէ ձեզ՝ լուարուք, և զամենայն բարի կամս ձեր՝ դա կատարէ: Նոյնն իսկ 'ի տեղւոջ փոքր մի աղէխարշեցայք 'ի տապոյ փառաց դորա, առաջ առաջ թանձրացոյց զամենն 'ի վերայ ձեր. եթէ սակաւ մի յամեալ էք՝ և դուք և տեղիդ բոցակէզ լինէիք. նա և 'ի բնական ջերմութենէս ասոտի են տեղիք, ուր ամարանի հրդեհք բարբաջին. և եթէ մասնաւոր լոյս այդպիսի սաստիկ տապով հարկանէ՝ զինչ կարծես զինքնածագն լոյս, եթէ թոյլ տայր որ ունէր զծով և զցամաք՝ առ հասարակ կիզուր: Նայիմ լուսոյ ճաճանչ սակաւ մի երեւեցաւ Պաւղոսի. թէպէտ և ոչ այրեաց զմարմին նորա, զլոյս աչաց նորա եկեղ. թէպէտ և այլ շնորհեցաւ նմա, զառաջինն կորոյս: Ողորմութեամբ իւրով ծածկեալ ունի ինքն զինքն, զի է թէ ոչ բաւեն տեսանել զաստուածութիւն նորա: Տեսե՞ր, ուր խոնարհութեամբ խօսի Աստուած ընդ արարածս, զմարդասիրութիւնն իւր յայտնէ. եթէ որպէս էրն՝ և յայտնէր զինքն, եղեալքս յապականութիւն դառնային առաջի նորա:

Արդ մի, տէր Պետրոս, բարիոք թուեցի առնել դմա տաղաւարս, զի չէ ժամանակդ այդպիսի գործոյ, և ոչ դու ունիս կազմած շինողաց. չեւ տեղեակ հիւսնութեան, և ոչ գիտես յորմ կարգել քարինս: Արդապէտ անուանեցաւ և զիւր արուեստն ոչ թաքոյց 'ի քէն. բայց եթէ դու մոռացկոտ ինչ իցես, ես ոչ գիտեմ. հանապազ քո առաջի գործեաց և գործէ, և յոյժ կամի զի ուսջիք և բանիւք և գործովք, որպէս ինքն առանց մարմնաւոր աշխատութեանց վարէ զարուեստն, 'ի դոյն նահատակութիւն և զձեզ կրթէ: Մի ընդ քուն խօսիր և մի զճշմարտութիւնն երազակոծ եղեալ՝ այլ ընդ այլոյ պատմես. յերկնաւոր մանրագորս հաստատեցայք, զհետ հետոց դորա ուսիր վերաբերիլ. 'ի ստուերաշուք տարերցս ելանել փութայիր, քան նստել ընդ սովաւ. յանապականն լուսոյն 'ի ծմակայլն տեղիս մի աղաչեր բնակել զայդպիսի չքնաղ լոյս. թէ և ջրայինքն տեսա-

նէին՝ 'ի ցամաք դիմէին, և եթէ 'ի սանդարամետա-
կանսն ծագէր՝ 'ի վեր կորզեալ ածէր զամենեսեան. ե-
թէ գոյր իշխանութիւն՝ հրեշտակաց թողեալ զայն երկ-
նից լոյսն՝ առ այդ լոյսդ իջանէին: Յայդ լոյս յերկնից
յերկիր երեւի, զերկրաւորս յերկինս տանի հանէ. և
յորժամ յերկրէ 'ի վեր ծագէ, զվերինսն 'ի վայր խո-
նարհեցուցանէ. այդ լուսով ետես Յակոբ զսէր լուսե-
ղէն սանդղոցն. 'ի լուսեղէն տեղիս բնակեալ էր Ադամ.
զայն լոյս թողեալ՝ առ այս լոյս խոնարհեցաւ և եկն.
յայդ լոյս առանդեալ էր. Մովսէս, աղգեցաւ նմա 'ի
Սինայ լերինն, փութացաւ եկն առ անձկալիդ: Տե-
սանէս զհայրդ փառին երկոքեան զլուսովն. չյագին բա-
զում բանիւն զոր խօսին ընդ նմա. 'ի ծագել այդ լու-
սոյ՝ արեգակն խաւարեցաւ, որպէս աստեղք յարեգա-
կանէ. արեգակն 'ի դիմանէ չերեւեցաւ: Այս քեզ յոյժ
երանի տամ, զայդ տեսեր և յայն հրաւիրեցար. ամե-
նայն աշակերտ զվարդապետին արուեստն փութայ ու-
սանել: Ո՞չ 'ի քոց տաղաւարաց անտի եհան զա զքեզ.
խոկմունս իմն արարեալ ձեր 'ի ծաղկեզերին, վասն այդր լու-
սոյ՝ եւ թողուլ ձեզ զայն, զի յայդ թեւակոխեսջիք, ընդ
այդ ընդելջիք, զայդիւ եկեսջիք, 'ի դոյն խոկասջիք, դմին
արժանի լինջիք զգենուլ: Զիք տեսեալ զազգ թռչնոցդ.
ձագուցն յորժամ թեւքն թաւացեալ հաստատեան՝ ոչ ըն-
թացս ունին 'ի վերայ բունոցն, այլ 'ի հայրենի արուեստ
վերաբերին. զոր տեսանենն՝ զմնաւ ածեն զայն. մինչդեռ
մատաղաբոյս են թեւքն՝ անդէն 'ի տեղւոջն սաէպ բո-
տէպ շարժին. յորժամ բոլոր վարազաթեւք աճեցեալ
մեծանան՝ տակաւին 'ի վեր վազեն սասախազաց լինե-
լով և աներկիւղք եղեալ յանկանելոյ, ապա բարձրա-
ցեալ 'ի վերոյ օդոց ճախրեն զերամբք, թռուցեալ առ
անդրօվք քերեն, անկասկածք անցանեն զնալ յերկրա-
սող մտասակարացս:

Որինակաւ իմն Տէր զձեզ ուսուցանէ. կրթեաց 'ի
նշանս և յարուեստս մեծամեծս, զի ամենայնիւ զձեզ
յինքն սպասաւորեալ միացուսցէ, զի և դուք զայլս 'ի
մահուանէ 'ի կեանս տարայջիք. արար զձեզ կիրթս և
հմուտս և տեղեկագոյնս, զի լինիք պատճառք կենաց
ամենայն աշխարհի: Նայց դու որ ոչ էիր 'ի լերին անդ,
մի իբրեւ զանուն լուսոյն լուեր՝ առ այսմ լոյս հազցին

կացցեն միտք քո. զայս լոյս հանապազ տեսանեմք, ոչ
յիմարիմք և ոչ թմբրիմք, և ոչ ամենեւին երկիւղ ինչ
անկանի 'ի սիրտս մեր. այլ որ զցայգն եմք՝ նոյն եմք և
զցերեկն. վասն զի նուիրեղէն արարած է, և մեզ 'ի
սպասաւորութիւն տուեալ. պղտոր, մթին, փոշեխառն,
մրրկեալ, խռովեցեալ տեսեր, և ոչ զերկնային վերին
կարէ ցուցանել. և այնչափ օտար է յայնմ լուսոյ, որ-
պէս և նկարեալն 'ի կենդանւոյ: Որպէս և նոքին աս-
տուածութիւնն բազում մասամբք երեւեցաւ մարգա-
րէիցն, և մի ոք 'ի նոցանէ զԱստուած ոչ կարաց տեսա-
նել. այլ նմանութեամբքն որով տեսին՝ բաւական հա-
մարեցան. հանդերձ կամօք իւրեանց և կատարեցան
բանք նոցա գործովք: Որպէս և այսօր 'ի լերինն երեւե-
ցաւ, այն է զոր հանապազ տեսանէին. այլ ոչ այսօր
նոյնպէս տեսին, և ոչ այլ ընդ այլս զայլ ոք Քրիստոս
տեսին. որ էրն՝ զնոյն տեսին, ոչ նոյնպէս զձուձ. փոքր
մի վերագոյն քան զառաջինն տեսին և թմբրեցան 'ի
նշանաց անտի. և եթէ աւելի քան զձեզ կարծէիք՝ այլ.
ոչ ինչ 'ի վեր հայէին միտք ձեր: Աստուծոյ նշանագոր-
ծութիւն բոլոր արարածքս են. զաշխարհս ոչ 'ի նշանս
ինչ արարեալ է ումեք, զի և գոյր իսկ ոք ոչ յառաջ
քան զաշխարհ. և նա բնութեամբ ունի զբարերարու-
թիւնն. զոր ինչ կամի՝ կարէ առնել, ոչ 'ի պէտս իւրոյ
անկարօտ բնութեանն, այլ 'ի յեղելոցս 'ի լրումն ա-
ռանց պակասութեան. և զմարդ սիրէ քան զբոլոր ա-
րարածս. և կամի 'ի ձեռն նշանացն՝ զի զանեղ բնու-
թիւնն ծանիցեն, և 'ի ճանաչելոյ անտի լիցի սիրոյ բա-
րեկամութիւն. և դարձեալ եւս վերագոյնս ձգիցէ, որ-
պէս թէ իւր իսկ առնիցէ գահակից: Զոր և այսօր ա-
ձեզ նորին սիրոյ եցոյց զօրութիւն, ոչ երկրաւոր նշա-
նօք, այլ երկնից մանաւորութեամբ. ցայսօր զմարմնա-
կանսն տեսանէիք իբրեւ զմարդ, վարդապետ կարգայիք,
ըստ մարդկութեան եւեթ իմանայիք զզարմանցումն.
վասն այսորիկ փարատեաց 'ի նոցանէ զմարմնաւոր տգի-
տութիւնն, զի երկնաւոր յայտնութեամբն կրթեսցէ
զնոսա, և մի համակ զմարմնականօքն եկեսցեն. որպէս
և ասէ գիրն, եթէ "Յայլակերպս եղեւ առաջի նոցա":
Յայլակերպումն ոչ այլ ինչ է իմանալ, այլ աստուածա-
կերպ երեւեցաւ առաջի նոցա, զի և զնոսա յայն կեր-

պարանս փոխեաց 'ի ժամանակի իւրում. կրթեցան աչք նոցա հայել 'ի մարմնաւորութիւնն Տեառն. ոչ կարացին խորհուրդք նոցա համբառնալ յերկինս. ընդհարան աչք նոցա 'ի լոյս փառաց նորա, կորացին զարժանի էութիւն նորա իմանալ: Ի բազում բարձր տեղիս ելեալ էին նոքա ընդ Տեառն, այլ ոչ մտօք. այնպիսի տեսիլ եցոյց նոցա այն օր զիմանալի լոյսն, զի կրթեսցէ զնոսա յեւս առաւելութիւն: Ըստ մարմնոյ 'ի լեառն ելին, մտօք վերացոյց յամենայն աշխարհական ցանկութեանցս. բարձր է լեառն քան զքաղաքս, զնոսա քան զբնաւ աշխարհս բարձրացոյց: Երբեմն ելին ընդ Տեառն 'ի Գալիլեայ 'ի լեառնն' ուր զերանութիւնսն աւետարանեաց նոցա. բանս երկնաւորս լուան, այլ միտք նոցա ոչ ինչ բարձաւ 'ի յերկրաւորացս. իսկ աստ բանիւք ինչ ոչ խօսեցաւ ընդ նոսա. լուսով երկնացոյց զլեառնն, և լուսութեամբ երկնաւորս արար զնոսա:

Ի իսկ 'ի բնութեանս մերում, յորժամ շրջիմք 'ի բազմամբոխ քաղաքի, զքաղաքական կարգսն սիրեմք ուսանել. յաճախագոյն պշնումք ընդ փառս երկրաւորս, և խոնարհին միտք մեր յիրս երկրաւորս ապականացուս. և եթէ ոչ մեծաւ պատրաստութեամբ զգոյշ կայցես անձին քում, հազիւ կարասցես ապրել 'ի պատիր զբօսանաց աշխարհիս: Վասն որոյ և Մովսէս հանեալ զժողովուրդն յԵգիպտոսէ, շրջան առ յանապատի անդ ամս քառասուն, և ապա կարաց լինել նոցա օրէնսդիր. իսկ իբրև բնակեցան 'ի քաղաքս բազմամարդիս, և զեղեալ օրէնսն ոչ կարացին պահել: Այս է ճշմարիտ, որ ընդ երկիրն պշնու' զերկինս ոչ կարէ տեսանել: Ապա և Տէր մեր իբրև յԵգիպտոսէ եհան զաշակերտսն 'ի լեառն անդր, և ուսոյց նոցա զանգիր օրէնս երկնից. քանզի և մեր տեղին առաջին անգիր էր: Գիր զմարմնականացն խօսի, անգրութիւն զանմարմին էութիւնն ցուցանէ: Գիր' զմահն Մովսէսի պատմէ, իսկ անգրութիւն' զյայտնութիւն Տեառն առ աշակերտսն: Գիրն ինքն անցական է, և զանցաւոր աշխարհս արկանէ ընդ պատմութեամբ. անգիրն յինքեան զրէ զանցաւորս, զի անանցս արասցէ: Գիրն զվերանալն Եղիայի նիւթական պատուականօքս ասէ. անգրութիւն զերեւումն Տեառն և զեղիայեանց: Եւ իբրև այնք յայ-

լում նստեալք և եկեալք, այլ ինքն ինքեամբ երեւե-
ցաւ 'ի վերայ քան զերկինս. ոչ այրեցող բնութիւն՝
մարմնականաց առ արկանելով, այլ լոյս փափուկ և ա-
րարող, որպէս և ժառանգաւորաց արքայութեան՝ յան-
մարմնականաց տեղիսն զգենուլ: Նոյնպիսի տէր ե-
րեւեալ, և ըստ իւրում էական բնութեանն շնորհեաց
և ծառայիցն զնոյն փառաւորութիւն. զի եթէ ոչ այն-
պէս էին, և ոչ մերձենալ կարէին 'ի հուրն ամենակէզ:
Այլ պետրոսեանք որք տեսող են աստուածային փա-
ռացն, և նոքա 'ի վեր կոչեցին 'ի ծանր մարմնակա-
նացս, համանելով մինչեւ յիմանալի հրեշտակաց բնա-
կութիւնս. անցեալ կային զեր 'ի վերայ մահուամբ, որ-
պէս և երէքն՝ սոյնպէս և երիւքն. ոչ միայն չերկնչել
'ի մահուանէ, այլ և 'ի բազում տեղիս հալածական
առնել զմահ 'ի մարդկանէ. քանզի յոյժ մեծացաւ ազ-
քատութիւնն նոցա: Այլ իբրեւ զերկչոտս գտանել 'ի
վերայ քան զերկիւղ. եւս իբրեւ ընդ որդւոյ մարդոյ,
զնոյն տեսին անդ որդի Աստուծոյ. եւս տգիտագոյնք,
ուսան անդ զկատարեալ գիտութիւն. եւս ընդ այնմ
զոր գիտէին ծնեալ 'ի կուսէ, իմացան անդ զնոյն ծը-
նեալ 'ի Հօրէ յառաջ քան զաշխարհս. եւս ընդ այնմ՝
որ մկրտեալն էր 'ի Յովհաննէ, տեսին անդ զնոյն՝ որ
բնակեալն էր 'ի Ճառագայթս անմատոյց լուսոյ փառաց
իւրոց. եւս ընդ այնմ՝ որ հետիոտս վաստակէր գնա-
լով, զնոյն իմացան անդ որ նստի 'ի կառս քերովբէա-
կանս. եւս ընդ այնմ՝ որում Հրեայքն սպառնային ըզ-
մահն, զնոյն գիտացին տէր մահու և կենաց. եւս ընդ
այնմ՝ զոր աղաչէինն մի մատնել զինքն 'ի մահ, իմացան
եթէ ոչ սա երթայ 'ի մեռանել՝ աբրահամեանք ոչ կա-
րեն գալ առ մովսիսեանս. և զոր արգելուինն 'ի մա-
հուանէ, յառաջ քան զժամանակն փութային տեսա-
նել զմահ նորա: Արքայութեան պատճառանօք եհան
զնոսա 'ի լեառն անդր. իմացուցոյց եթէ առանց մա-
հու միածնին ոչ ոք կարէ ժառանգել զարքայութիւնն:

Այլ իբրեւ երկոքեան հատածքս այս ունէին յինքեանս
զերկնաւորս և զերկրաւոր բարութիւնս, առ ինչ ար-
գեօք պատուիրէր Տէր մեր աշակերտացն և ասէր, ա-
մենեւին չասել ումեք զմեծ յայտնութիւնն որ երեւե-
ցաւ նոցա: Այս սովորութիւն է վարդապետութեանն

Քրիստոսի. յորժամ զմարդասիրութիւնն ցուցանէր բժշկելովն առ ախտաժետս նոցա բազմաց 'ի նոցանէն զնոյն պատուիրէր: Մի՛ ումեք, ասէ, ասիցէք վայրապար կամ 'ի գիւղս կամ 'ի քաղաքս. զի և դու զնոյն ուսանիցիս չառնել աշխարհագոյժ զողորմութիւնս քո. ապա եթէ պիտոյ եւս է ցուցանել, փոխանակ բանից գործքն քարոզեսցեն: Աստուած զբոլոր աշխարհս արար և ետ մեզ, և երախտիս ինչ ոչ համարեսցուք մեզ, բայց միայն ճանաչել զնա և զհետ երթալ կամաց նորա: Պատուիրեաց աշակերտացն լինել աստուածանման. քանզի ժառանգ իւր հաստատեաց զնոսա և նոքօք զամենայն աշխարհ. յորժամ Աստուծով առնիցեն զամենայն մեծամեծս վարդապետին իւրեանց, ծածկագիտին միայն աւանդեսցեն զխորհուրդն: Դարձեալ և յոյժ խնայեաց 'ի նոսա. միթէ ըստ մարմնոյ ինչ պարծեսցին վասն մեծամեծ սքանչելեացն՝ զոր և գործեցին և տեսին անդ. զի ընդ մէջ Թշնամեաց շրջէին և ոչ բարեկամաց, և աւելի առաջի կեղծաւոր մեկնչաց, որ իբրեւ զճանճս կեղասէրք էին, ուր գտցեն Թարախ՝ առաւել եւս զայրացուցանէին զմեղն. չարագոյն եւս քան զայս լինէին բանք նենգաւոր մարդոյ. որպէս և եղեն իսկ նոքա պատճառք մահու ժողովրդեանն, ոչ միայն հողածին մարմնոյ, այլ և անմահ ոգւոյ սպանողք:

Պատուիրեաց նոր նորոգելոցն՝ որք արբին զճաշակս նոր գինւոյն, մի՛ արկցեն 'ի տիկս զզօրութիւն գինւոյն 'ի հինսն, զի ոչ հանդարտեն ընդունել զոյժ նորա. արգել զնոսա 'ի մեծ վնասէն. քանզի գիտէր եթէ տիկքն պատառին և գինին հեղու 'ի կորուստ նոցա, որպէս առ Կայիափայիւն իսկ երեւեցաւ. զի յորժամ տեսանիցէք զորդի մարդոյ զի նստի ընդ աջմէ զօրութեանն Աստուծոյ, իբրեւ զտիկ հին ցելաւ՝ 'ի պատառել պատմուճանին իւրոյ. բոլոր ինքն հեղաւ անկաւ յաստուածային նշտրճանէն. և եթէ 'ի Տեառն բանից անտի այնպէս զարկան անկան զանալիք, զինչ համարիցիս դու՝ եթէ յաշակերտաց անտի լուեալ էր վասն երկնաւոր սքանչելեացն. ո՞չ ահա իբրեւ զհուր բորբոքէին ընդդէմ նոցա, այրէին զանձինս և զնոսա առ հասարակ: Քանզի յորժամ լսէին 'ի նոցանէ՝ անդէն հարցանէին զնոսա, զի՞նչ էր առաւելութիւն մերին տեսլեանն: Իսկ եթէ

վասն Մովսէսի և Եղիայի պատմէին նոցա՝ սուտ հա-
մարէին, զի ոչ կարէին յայտ ուրեք ցուցանել. Թէ ու-
սէին՝ եկլին երեւեցան և գնացին, զայն ոչ արդար հա-
մարէին, քանզի ոչ ունէին զհաւատոցն գիտութիւն.
յայնժամ և զոր աչօքն իսկ տեսեալ էր 'ի Տեառնէ՝
չհաւատային։ Դարձեալ Թէ և վասն սպիտակ ձորձոցն
իւրոց ասէին, կրկին կորուստ կորստականացն իսկ հասա-
նէր, կամ լսէին իսկ ոչ զբանս նոցա, կամ 'ի մէջ բե-
րէին զսպիտակ ձորձս նոցա. քանզի երկրաւորք միայն
էին և անհաւատ լսելիք, զիմանալի յայտնութիւնն ոչ
կարէին տեսանել. և նոքա 'ի լերին անդ մարմնաւոր ինչ
յայտնութիւն ոչ տեսին, այլ երկնաւոր զօրութիւն ի-
մանալով; զայն՝ որոյ 'ի յայտնութիւնն նա միայն գիտէ,
և ում կամի ինքն յայտնէ ըստ մասանց, և մնացն մի-
այն ծոց բաւէ ժողովելով, այլ ոչ բանիւ պատմել և
սփռել 'ի լսելիս ուրուք. զի որ բանիւ գծագրի՝ ընդ մարմ
նաձեւութեամբ անկանի երեւումն նորա. իսկ երկնա-
ւոր փառքն յայտմանէ վերագոյն են, և 'ի մարդկանէ և
'ի հրեշտակաց։ Լուր Պաւղոսի առաքելոյ, որ ոչ միայն
'ի լեառն բարձրացաւ, այլ և յերկինս երրորդ և 'ի դր-
ախտն, և զպատրաստութիւն սրբոցն ետես, և զբար-
բառ պարգեւատուին լուաւ, այլ դէմ յանդիման ոչ
կարաց հանդիպել. և բարբառ որ եկն նմա 'ի վերուստ
ըստ մասանց՝ զզօրութիւն բանիցն ոչ ումեք կարաց երկ-
րորդել։ Այնպէս և վասն երկնաւոր պարգեւացն՝ զի
պատրաստեալ պահին՝ զայն ասաց. այլ 'ի պատուական
երկրաւորաց ատենի նմանել ումեք ոչ կարաց, իբրեւ է
Ճշմարիտ հանդերձեալ. և մեք յայն եմք յուսացեալք՝ զոր
Պաւղոսն ետես և պատմել ոչ կարաց. հաւատացեալք
'ի Քրիստոս լիով իմանան և զիմացեալն տեսանեն. և
յուսով այնպէս ակն ունիմք՝ որպէս և երանելին Պաւղոս։

Արդ վասն այսր աննմանի զոր Առաքեալքն 'ի լերին
անդ տեսին Հոգւով սրբով, չհրամայեաց պատմել 'ի
լսելիս Թերահաւատ ժողովրդեանն. մի՝ զի կարէին իսկ
ոչ նոքա պատմողք լինել. միւս եւս՝ որոց պատմէին՝ նո-
քա ոչ էին արժանի լսել։ Որպէս և ինքն Տէր յառա-
ջագոյն ուսոյց Առաքեալսն. "Մի տայք, ասէ, զսր-
բութիւն շանց, և մի արկանէք զմարգարիտս ձեր առա-
ջի խոզաց". շան՝ սուրբ և պիղծ կերակուր ընդ մի հա-

մարեալ են. և խոզի քան զպատուական մարգարիտս ընդ պարանոցի՝ խոհերական տիղմ յոր թաւալի՝ լաւ թուի. զայս տեսանել՝ չար պարգևեաց տուողին թուի, և ես չարագոյն արտաքին տեսողաց։ Վասն որոյ և Տէր մեր զլուսաւոր խորհուրդն լուսոյ մանկանցն յայտնեաց, զի եղիցին վկայք ճշմարտութեանն լուսոյն՝ որ երևեցաւ նոցա 'ի լերին անդ. և նովին լուսով լուացեալք կայցեն մնասցեն իբրև զանստուեր ճառագայթս. և նոքին եղիցին քարոզք լուսաւորութեան նորա, որք եղեն իսկ և կատարեցան. և ամենայն արարածք որք նուաղէին 'ի խաւարի և 'ի ստուերս մահու՝ յայն լոյսն յանանց դիմեցին, և նովին լուսովն լուսաւորեցան և լուսաւորեցին մինչև յերկրորդ յայտնութիւն նորին լուսոյ. և նոյն Տէր գալոց է լուսաւոր ամպովք յերկնից ամենայն լուսաւոր զօրօք երկնաւորօք. և 'ի նոյն լոյս լուսաւորին մեռեալք, և կենդանիք ամենայն արժանաւորք՝ յանփոփոխ և յանվախճան յաւիտեանս։

Յոյժ կասկած եղև մտաց իմոց իբրև մերձ եղէ 'ի կատարած ճառիս. ապա յիշեցի եթէ իրք անխնդիրք մնացին 'ի միջի սորա. քանզի փոքր 'ի շատէ տեղեկագոյն եմ խուզող մտաց՝ որ անմեղութեամբ քննեն զզօրութիւն բանին 'ի շահն անձանց և 'ի փառս սուրբ եկեղեցւոյ։ Տեսանեմք իսկ աստէն և 'ի մերում աշխարհիս, բազումք վարեցեալք առաքինութեամբ անսխալ հաւատովք ըստ առաքելական կանոնին, յորոց ցնծացեալ բերկրի սուրբ եկեղեցի հեթանոսաց։ Զայս հաւատ յանձին պահելով դեգերէին յուսումնասիրութեան ուխտաւոր մանկունք Հայոց մեծաց, զանձինս պարապեցուցեալ 'ի վաճառաշահ օգտից. ոչ ինչ ընթանան զհետ ընչաւէտ մեծութեան, այլ գործ հանապազօրդ այնպիսեացն՝ պահք և աղօթք, զանձինս պահել յամենայն ագահական փառաց։ Այլ հարցք և խնդիրք վասն ծածկեալ բանին զոր ընթեռնուն 'ի սուրբ կտակարանս, գիտեմ զի հարցանեն յայսմ ճառի ցմիմեանս և ցիս. Յարեաւ, ասեն, Մովսէս 'ի մեռելոց մարմնով և երևի 'ի Թաբօր լերան առ Տէրն մեր. Եղիայի ահա չէր ինչ խափան, որպէս վերացեալն երագ՝ ահա երագագոյն ևս գայր. Մովսէսի ընդ այն ինչ ոչ զարմանամք եթէ ընդ Եղիայի արդարութեամբ գտաւ. այլ

եթէ մարմնով յարեաւ և կամ եթէ հոգւով՝ կերպա-
րանեցաւ առաջի նոցա։ Եթէ մարմնով յարեաւ՝ ճըշ-
մարիտ մինչդ եղեւ նմա, այն որ աղաչէր զԱստուած միան-
գամ չմեռանել՝ կրկին արդեօք զմահ ճաշակեաց. մա-
նաւանդ զի զՅիսուս եռես յանմահութեան, և զՏէր
հայրենի փառօքն յարքայութեան. և ինքն անդ եւս 'ի
հողոյ եկեալ և անդէն արագ արագ դառնայր. կարի
դժուարագոյն է տեղիդ ասեն։

Ինձ ոչ ծանրագոյն թուի հարցուածդ. է ինչ որ 'ի
գրոց ունիմ առնել անդրէն պատասխանի, և է ինչ որ
յանգիր էութենէն՝ հայելով յաստուածային զօրու-
թիւն. և ընդդէմք ինչ ոչ են միմեանց. քանզի գիրն
'ի լսելիս ազդէ զաստուածային պատուիրանս, իսկ ան-
գրութիւնն՝ յաներեւոյթ մտացն տախտակս. և են եր-
կոքեան աստուածատուր շնորհք, զոր աչք տեսանեն,
շըթունք ընթեռնուն, ականջք լսեն. առանց գրոց միտք
բերեն զմեկնութիւն։ Որդ քաջ մտառութեան մեծ է
որովայն և անձանձրոյթ է ծոցն, և անծանրանալի է
բազմութիւն բեռինն. որչափ և անկանի 'ի ներքս, ոչ
յագեալ շատանայ բազմութեամբն. աղաչելով զԱս-
տուած՝ ընկալեալ զերկակն և երրեկին կարիցէ հաս-
կանել. որպէս և է տեսանել, որք առանց գրոյ խորամուխ
եղեն 'ի սէր որդւոյն Աստուծոյ՝ ճշմարտութեամբ հա-
ստ եղեն գրելոցն, և ոչ ինչ ծածկեցաւ 'ի նոցանէ յան-
գիր օրինացն Աստուծոյ. որպէս և ինքն իսկ Առաքեալ
ասէ. "Ոչ ի այն զոր կամք յաղօթս՝ որպէս արժան իցէ
ոչ գիտեմք, այլ ինքն Հոգին հասանէ 'ի թիկունս՝ 'ի
հեծութիւնս անմռունչս բարեխօսէ առ Աստուած"։ Ա-
մենայն սուրբք առանց բանի պատմութեան խօսին ընդ
Աստուծոյ, և առանց ձայնի արձակելոյ 'ի վերուստ՝ լսեն
կամաց նորա. և զոր ասենն և զոր լսենն՝ ընդ գրով ար-
կանել ոչ կարեն, և առաքինի գործովք իւրեանց յայտ-
նի առնեն զանգիր օրէնսն Աստուծոյ։ Իսկ յորժամ
զայսպիսի զօրութիւն յոգիս մեր հեռազօտեմք, կարեմք
զծածուկս բանին Աստուծոյ ծածկապէս իմանալ, և ըղ-
տուչութիւն պարգեւին որ շնորհեաց մեզ՝ առատաբերեմք
բարբառով. զի և յայլոց լսելիս ազդիցէ հնչումն երկ-
նաւոր։

Յարոյց Եղիա զմեռեալ և երկուս Եղիշա, և կրկ-

նահանջ որ ոչ առէ նոցա, այլ մի կեանք և մի մահ. և Տէր մեր յարոյց զմեռեալս, նոյն աւր և նոցա. այսքանք էին և Մովսէսի. քանզի յառաջին մահուան իւրում ոչ հիւանդացաւ. ինքն Տէրն կոչեաց զնա 'ի լեառն, և ինքն Տէրն որպէս և զոէր առանց չարչարանաց աւանդեաց զնա գերեզմանին։ Այսմ և մահ իսկ ոչ է արժան ասել՝ այլ և փոփոխումն. Պաւլոս և զայս քուն իսկ անուանեաց. «Ես ննջեցի և 'ի քուն եղէ, զարթեայ և Տէր ընդունելի մեր է»։ Դու իսկ որ հարցանես՝ ո՞չ հանապազօր 'ի քուն մտանես, ընդ առաւօտն յարուցեալ կանգնիս. ոչ ինչ տրտմիս յաղագս յառնելոյն. զի գիտես եթէ անդէն հասանէ ընդկողմանել։ Արդ թէ ասիցես թէ այս դիւրագոյն է և այն դժուարագոյն, մի՛ ասեր, սուտ կարծես. հազար անգամ մահն Մովսէսի դիւրագոյն է, քան զքունդ քո։ Եթէ քաղցեալ և ծարաւի 'ի քուն մտանիցես, յար ուտես և ոչ յագիս. աղբեր աղբեր շրջիս և ոչ ըմպես. և եթէ բռնադատեցար ինչ աւելի քան զչափն անքուն, զառաւօտն ցանկաս տեսանել. և եթէ պայմանաւ կերակրոյն և առողջութեամբ մարմնոյդ դէպ եղեւ քեզ շարժել զաղտեղութիւն, և կամ լինիս երազական, այտ և անդր մերկ դրդուիս, որով 'ի տուընջեան քեզ չարաւ թուիցին. և չիք իսկ ամենեւին խաղաղութիւն 'ի մերում շարժմունս։ Իսկ յայսմանէ Տէրն մեր զՄովսէս պարկեշտագոյնս ամփոփեաց. ծերութիւն ոչ թարշամեցոյց զգեղ նորա, և հիւանդութիւն ոչ ապականեաց զմարմին նորա, ոչ յառաջնում նուագին հեծութեամբ էջ 'ի գժոխս, և ոչ 'ի վերջնում հրաժարելն 'ի Տեառնէ դանդաղեցաւ ինչ թերեւս. և վասն այնորիկ Աստուած ինքնին իսկ ամփոփեաց ... զա 'ի մահ անդր. 'ի ձեռն նորա փոխեաց զնա և ծածկեաց. և ձայն նորա կոչեաց զնա, և զամպն հովանի արար 'ի վերայ նոցա. նոյն ինքն փութանակի ած առ սիրելին իւր զՄովսէս, որպէս և ինքն Տէրն մեր ասէ. «Հայր յարուցանէ զմեռեալս և կենդանի առնէ»։ Յարոյց Որդի զՂազար կարդալով առ Հայր. յարոյց զՄովսէս Հայր միաբանութեամբ Որդւոյ, զի երեւեցան իսկ առ նմա. ըստ այսմ իմասջիր զանքակ միաբանութիւնն սուրբ Երրորդութեանն, և յարարչութեան և 'ի փրկութեան և 'ի նշանագործութեան և 'ի

յարութեան նորոգմանն։ Այս փոխան Մովսէսի յարութենէն մարմնոյն մի ինչ տկարացեալն միտք ուրուք․ չէ ճառ բանիցս այսոցիկ առակ օրինակի, որպէս մեծատանն 'ի դժոխս և կամ Աբրահամու և 'ի Ղազարու յաղքատութեանն․ այն զհանդերձելոցն յայտ առնէ։ Տեսեր և յաշակերտաց ամենի չիք ոք այնմ վկայ․ քանզի ծածուկքն Աստուծոյ միայն են յայտնի․ իսկ որ ճշմարտիւս երեւեցան, զայս և մարդիկ ընդ Աստուծոյ կարացին տեսանել։

Բայց ես յոյժ աղաչեմ զամենեսեան, ինչ որ յերկրէ և այսր է՝ բազում այն է որ քննի իմաստուն մտաց, և սակաւ այն է որ ծածկի 'ի մէնջ․ իսկ առ աստուածութիւնն և ոչ քան զակն քթթումն՝ անկանի ընդ գիտութեամբ․ զի եւ վէմն զջուրն՝ զայն գիտեմք ամենեքեան․ որպէս եւ, ծածկեալ 'ի մէնջ․ որպէս երթայր զհետ նոցա, թարգմանէ մեզ Պաւղոս․ զիարդ գնայր առանց ոտից, զայն և ոչ Պաւղոս գիտէր․ նոյն իսկ Պաւղոս զմերանալն իւր յերկինս՝ զնշան ճանապարհին եթէ հարցանես՝ ոչ գիտէ պատմել։ Օք եկն Մովսէս 'ի մեռելոց մարմնով հաւատամք ճշմարիտ․ որպէս եկն, և ոչ իմքն Մովսէս գիտէ։ Հաւատամք եթէ կերան անմարմինքն զճաշն Աբրահամու․ նոյնպէս հաւատամք եթէ եկին Մովսէս և Եղիա առ Տէրն մեր 'ի Թաբօրն․ և եթէ ոք յայտմանէ յերկքայս լինի, երեք սուրքն մեզ վկայեն պարձեալ․ և եթէ այլ ոք անհանճար մտօք ասիցէ, եթէ կերպարանաւ միայն երեւեցան, այդմ չէ հնար, մի հաւատար․ ստուեր 'ի հայելւոջ երեւելին բանք․ ոչ ստեն աստուածային գիրք՝ ուր առակն է․ ոչ 'ի մարդկանէ խնդրեն վկայ, այլ մտաց իմացուցանեն զմեկնութիւն բանին․ իսկ ուր ճշմարտութիւնն է, յայտնի երեւի պարզաբանութիւնն։

Ասաց Եսայի․ "Տեսի զտէր յաթոռ բարձրութեան"․ ճշմարիտ էր տեսիլն, այլ ոչ զորպիսութիւնն կարէր տեսիլն ցուցանել մեզ․ ուր կամի Աստուած՝ առակօք խօսի ընդ ծառայս իւր մարգարէս․ և ուր եւս խոնարհութեամբ խօսի՝ և զինքն թանձրացուցանէ, որչափ բաւէ մեր բնութիւնս տեսանել․ և վկայս ածէ հրաշակերտս և 'ի հրեշտակաց և 'ի մարդկանէ արդարոց․ է զի 'ի կենդանեաց և է զի 'ի մեռելոց։ Այնպէս և յայսմ տեղւոջ բազում ինչ նշանս արար Աստուած 'ի ձեռն Մովսէսի,

և մեծարեաց զնա քան զամենայն մարգարէսն. զսա յարոյց 'ի մեռելոց, զսա տեսաք զի կայր և խօսէր ընդ Քրիստոսի. որպէս տեսաքն և վկայեմք, որպիսութիւն յարութեան նորա՝ Տեառն միայն յայտնի: Նաև զի եկին Մովսէս և Եղիա և խօսեցան ընդ Քրիստոսի և տեսին երեք Առաքեալքն, վկայեմք ճշմարիտ բանից նոցա. և որ յաչս մեր անհնար է, Աստուծոյ ամենայն ինչ հնարաւոր է:

Նաև վասն լերինն գեղեցկութեան և վայրացն վայելչութեան՝ եթէ կամիք ախորժելով ունկն դնել, սակաւիկ մի երկրորդեցից ձեզ զտեսիլ ցանկալի տեղւոյն: Լսելով յաւետարանէն գիտէք ամենեքեան զտեղին. բայց մեք և անձամբ իսկ հասեալ և աչօք տեսեալ, ոչ յատուկ միայն առանձինն, այլ բազում ընկերակցօք. որոց և կամ իսկ եղեւ ումանց մնալ 'ի լերինն, ոչ ըստ մարմնոյ ախորժութեամբ բաղձանաց, այլ առ գութ սիրոյն Քրիստոսի: Քանզի բնակեալ են անդ բազմութիւն սքանչելի եղբարց, որք հոգւով յաճախագոյն վարին՝ քան թէ մարմնով: Քանզի թէ ըստ մարմնաւոր մնաց ոք հայի 'ի տեղի անդ, վայելչագոյն երեւի քան զտեսիլս բազում լերանց. նախ զի նիստ նորա է 'ի մեծ դաշտի միոջ յերկրին գալիլեացւոց, և այլ լերանց ամենեւին հուպ ոչ գոյ 'ի նմա, բայց տեսանելով հեռագոյն. և ինքն է բարձր և բոլորանիստ. և շուրջ զիւրեւ ունի ինքնաբուխ գուբս ջրոց և խիտ առ խիտս ծառաստանս բազումս՝ որք պտղաբերին յանձրեւաբուղխ ամպոց, և լինին ազգի ազգի միրգք քաղցրահամք. և բազումք և այլ համադամք անուշութեան. որթք գինեբերք, որ իբրեւ թագաւորաց ընկալեալ արժանիք. ընդդէմ լերին յաճախագոյն ծառք ձիթենիք և եղջերենիք. չորեքեան օդք 'ի նա շնչելով, յոլովագոյն հիւսիսի զօրանայ 'ի նա: Եւ շաւիղն ընդ որ Տեառնն ելեալ է, յոյժ ողորդ է ելն, այսր և անդր մանուածով արարեալ ճանապարհ. ով և կամի ելանել կալ յաղօթս, դիւրաւ զելանն 'ի վեր առնիցէ: Յորժամ ելանէ ոք 'ի բուն գագաթն լերինն, բոլոր դաշտն առ հասարակ յայտնի երեւի, յարեւելից կողմանէ մինչեւ 'ի Յորդանան գետ, յարեւմուտս՝ մինչեւ 'ի ծովն մեծ յաշխարհն ծայդանացւոց, 'ի հիւսիսի՝ մինչեւ 'ի ծովն Տի-

բերեալ, 'ի հարաւ՝ մինչեւ յայգին Եղովմթայ եղրայե-լացւոյ. և ամենայն բազմութիւն վայրացն նարօ գիւղ առ գիւղ և ագարակ առ ագարակ, և բազում քաղաքք 'ի մէջ նոցա. և ինքն կատար լերինն՝ հովանաձեւ զարդա-ցեալ. զան և ծառք ոսկաւազդիք և թանձրահող բա-զում 'ի նա:

Այլ 'ի տեղւոջն ուր երեւեցաւ նոցա Տէր լուսաւոր պայծառութեամբն, յարեւելից կողմանէ հովտացն, յետ բանիցն Պետրոսի՝ հեռագոյն 'ի մեծամեծ շինեալ երիս եկեղեցիս, և ունին պաշտօնեայս բազումս, դա-տեալք և որոշեալք յամենայն մարմնաւոր ցանկու-թեանց. թէպէտ և կեան մարմնով, այլ ոչ վարին ըստ մարմնոյ քնքշանաց. այնպիսի են առաքինիք՝ զի և կար-ծէ ոք ոչ գոյացանէ թէ շարժեսցէ զնոսա կարօտութիւն մարմնոյ. ոչ երբեք ընկալան յումեքէ ոսկի կամ ար-ծաթ կամ հանդերձ, կամ բնաւ որ ինչ պիտոյ է մարմ-նոյ. այլ որպէս հաճոյ թուեցաւ միաբանելոց ամենե-ցուն՝ առն իւրաքանչիւր արարեալ փայտատ երկմատնի, և այնիւ խարխարեալ յուղէն զթանձրահող հովտացն, սերմանելով 'ի նմա ցորեան և գարիս, և թէ այլ ունդք իցեն, 'ի պէտս կերոյ մարդկան. և 'ի չափ հասեալ հա-կացն՝ ծայրախուզ հնձելով ուտնաշուփ կասեալ մարգա-ցի տան հողմոցն հոսելով զարդիւնս շեղջոցն. և արկեալ 'ի շտեմարանս, զնոյն դարձեալ ինքեանք լեսուն 'ի ձեռն երկանի. մեծաւ տաժանութեամբ [օր ըստ օրէ պատ-րաստեն] զհարկաւոր կերակրին. և զարմանեն հացիւ և ջրով լոկով, և աղիւ համեմելով, զոր և խորտիկն ա-նուանեն: Այլ ունեն և այլ յաւելուած յանուշութիւն կերակրոց. 'ի ձմեռնային ժամանակի քաղեն զխիւ լե-րինն և թթուեցուցանեն աղիւ և ջրով և զոպայիւ. և որպէս ինքեանքն իսկ ասեն, կարի օգտակար է 'ի տապ աւուրս խորշակի: Այլ չորքոտանի ամենեւին ինչ 'ի վեր 'ի լերանն ոչ ելանէ. այնպէս սուրբ պահեն զելս ճա-նապարհին, իբրեւ թէ ժողովք հրեշտակաց իցեն և ոչ մարդկան. քանզի են իսկ արդարեւ իբրեւ զանմար-մինս: Զիք նոցա իւղ յամենայն վաճն կերակրոց. բայց եթէ 'ի ծախս անշէջ կանթեղաց որ հանապազորդ վա-ռեալ այրին յերիս եկեղեցիսն: [Զիք նոցա գինի 'ի սա-փորս, բայց եթէ 'ի սպաս տէրունեան բաժակին: Զիք

նոցա դարման պաճուճանաց 'ի պէտս հիւանդաց, և ոչ պատրաստութիւնք վասն օտարաց. այլ օտարաց և ընտանեաց հասարակ է նոցա միաբանութիւն. իբր ոչ եթէ ինքեանք մարդատեացք ինչ են, այլ մարտ եդեալ կուին ընդ ապստամբ մարմնոյս, եթէ դուցէ զապարէզսն չկալեալ ուղիղ՝ զհեծեալն քարավէժ առնիցէ։ Վասն որոյ և ոչ կամին համապազ ճաշակել. այլ սովորութիւն է նոցա բնական ամառանի ածանելով, և ձմերանի հաւաքելով զաւուրս շաբաթուն. իսկ որ հզօրագոյնքն են 'ի նոսա՝ զողջոյն շաբաթն ձգեալ 'ի գլուխ տանին։ Ապա եթէ ոք երթայր 'ի հեռաստանէ առ սէր սուրբ ժողովոյն, կամ եղեւ ամենեցուն 'ի սովորականն լուծանել բերան. կարի յոյժ փոյթ յանձին ունին 'ի հաւեւոր կերակուրն, զի մի երբեք դադարեսցեն 'ի ճաշակելոյ. թէպէտ և համապազ ուտեն անյագութեամբ՝ եւս առաւել քաղցնուն և ծարաւին։ Ոչ միայն զհարիւր և զյիսուն սաղմոսն արկեալ 'ի վեր ձայնիւ, այլ բովանդակ զսուրբ կտակարանս եկեղեցւոյ, որով փառաւորեալ և ահաւոր ձայնիւք շքեղացուցանեն զսուրբ եկեղեցիսն 'ի լերին անդ։ Եւ զոր ընթեռնուն բանիւք, և է զոր պաշտեն փոփոխական ձայնիւք, զդադարումն ոչ երբեք առնուլ յագելով փոխանորդութեամբք միմեանց գունդք գունդք աբեղայիցն, յերիս եկեղեցիս բաժանելով հասարակութեամբ ստանց կատարելոյ ունին զկարգ պաշտամանն, զտուընջեանն և զգիշերւոյ. իսկ զերեկունն և զառաւօտին ժամն՝ ոչ եւս փոխանակաւ յաջորդութեամբ միմեանց, այլ միաբանելով ընդ միմեանս լինի բազմութիւն ժողովոյն վեցեկորդ քան զայլոց ժամուցն։ Եւ մի յերիս եկեղեցիս մեծագոյն է քան զերկուսն, զոր և Տէրունեանն իսկ անուանեն. և յերկուս անդ եդեալ են զնշխարս Առաքելոցն, որք և հիմնարկեցին իսկ զտեղին այն օր՝ ասելով զանուն երից տաղաւարացն. և անուանեն զնոսա վկայարանս սուրբս, և յիշատակեն զնոսա յանուն Մովսէսի և Եղիայի. և զերկոր աղօթսն 'ի կիւրակէին կատարեն. իսկ յերկուսն եւս երթան և անդ զԱստուած փառաւորեն։ Եւ են ամենեքեան մաշկազգեստք, գիտեն և ձեռնակերտիկ արուեստ. ոմն է որ զփիւրիղն առնէ, և ոմանք զնոյն նիւթս ստապատս գործեն. եթէ այլ ինչ պէտք են՝ գործեն, ընդ

լեառնն 'ի վայր իջանելով. և զամենայն զինչ և գործեն զարուեստն՝ ոչ յայլ ինչ 'պէտս օգտի, այլ 'ի գլխս ձիթոյ կանթեղայն հանապազորդ վառման, և 'ի ծախս օդեննեացն, ուստի զմաշկեղէն հանդերձիկն ձեւեն, նավին և զհողաբերան հայթայթեն: Դարձեալ հարկատուք են միմեանց սիրով. քանզի գոն 'ի միջի նոցա օտարատունք, և յիւրաքանչիւր վաստակոց անդր հարկին. են 'ի նոսա ծերագոյնք, որք ոչ հարկին զպէտս անձանց վճարել միաբան. վասն այնպիսեացն առաւել հոգտանին քան անձանց. վասն զի հրեշտականմանք են, ոչ միայն արտաքին պիտոյիւքն սիրեն զմիմեանս, այլ և զծածկութիւն խորհրդոց իւրաքանչիւր ոք ոչ թաքուցանէ յընկերէ. եթէ յանկարծ շարժեցան միտք ուրուք յիշելով զկերակուր տենչալիս, յայտնէ զախտն իւր միւսումն որ լաւագոյն է քան զնա. միաբանութեամբ աղօթս արարեալ 'ի վերայ՝ վաղվաղակի եկն յառողջութիւն անցաւութեան. քանզի և ինքն իսկ որ հիւանդացաւն՝ տեղեկագոյն գիտէ կռուել ընդ եկամուտ չարին խորհրդոց, մանաւանդ զի փորձիւ իսկ զչափ առեալ էր յառաջագոյն, եթէ ընդ կերակուրս մտանեն ամենայն մեղք 'ի բնութիւն մարդոյն. եթէ զայն դուռն մեղաց փակէ ոք, բազում փասք արգելուն 'ի նմանէ. զոր օմանք բազմագլուխ գազան կարդացին զպարարումն որովայնի: Տեառն, և նոքա նախ զնա սպառնեն, և յայլ եւս 'ի չասապար գլխոյ նորա՝ աներկիւղք դադարեցին 'ի լերին անդ, զի յերկրաւոր բարձրութենէն յերկնաւոր բարձրութիւնսն առ Տէրն իւրեանց կարացեն վերաբերել, որպէս Մովսէսն և Եղիայն փառօք երեւեցան Տեառն 'ի նմին լերին:

Եւ ես տառապեալս քան զամենայն մարդ, որ հետեւեցայ հետիոտս ընդ տէրունեան շաւիղն 'ի լեառն անդ, և աչօք տեսի զժողով սքանչելի եղբարց, աղաչեմ զընթերցողսդ և զլսողսդ, աղօթս արարէք 'ի վերայ իմ և ձեր հասարակ. ընդ նոսա արժանացուք յահաւոր դատաստանայն Աստուծոյ, և երկնից արքայութեանն արժանի լինել 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որում փառք յաւիտեանս յաւիտենից:

